գեան ձեռագիրն՝ որ Զ դարէն կ'ըսուի, տարեթիւը "343 իշխանութեան Յունաց" կ'ընթեռնու (= 32 Յ. Ք.) զոր քննիչք ուղղեցին ըստ հայ թարգմանութեան՝ 340, որով համեմատ կ'ըլլայ Եւսեբեայ։[1] Այսպիսի տարեթուոյ աղաւաղութիւն մ'ալ կրած է "Վարդ. Առաք." վասն զի նախ ասորի ամենէն ընտիր Cur. ձեռագիրը, զոր Գիւրըթոն հրատարակեց, եւ զոր Լանտ գիտնականը Ե դարէն կը դնէ, պարզապէս "յամին 39" կ'ընթեռնու, զոր պէտք ենք ուղղել հայուն ընթերցուածովն եւ գրել՝ 339, որ կը հաստատուի ուրիշ ասորի ձեռագրէ մ'ալ. (Cod. Add. 14, 173։) Ընդհակառակն փարիզեան ձեռագիրը (L) բոլորովին ուրիշ ընթերցում ունի՝ "յամին 342 . . . որ աւր 14 էր" (փխ. "4") կարդալով։ Բար-Հեբրէոսի մէկ կոչումն (Nomocanon, cap. V, sect. III) թէեւ ուղղագոյն ընթերցուածն ունի համեմատ հայոյն, բայց նաեւ լուսանցագիր տեղեկութիւն մ'որ "342, որ աւր 14 էր" կը գրէ։ Վերջապէս թէ շատ հին է այս տարեթուոյ տարբերութիւնը՝ կրնանք տեսնել Բարսամեայ վկայաբանութեան յիշեալ տեղէն, որ "աւր չորք էր Խզիրան ամսոյ" պահած է, բայց բուն տարեթիւը "341" կարդացած է։ Ասով գոնէ այն յուցուած կ'ըլլայ՝ որ կարելի է թէ Լաբուբնայի եւ կանոնացս նախնականին մէջ տարբերութիւն չկար ժամանակագրութեան։

Սակայն մտադնենք որ Բարսամեայ Վկայաբանութեան հեղինակը բոլորովին ուրիշ աղբիւր մը կը յիշէ՝ "հաւատարիմ մատեան" մը, որմէ գտած կ'ըսէ Քրիստոսի ծննդեան տարեթիւը, այն է "309" սելեւկեան տարին. անկէ պիտի ըլլան նաեւ "Հռուփոսի եւ Հռուբեղինոսի" հիւպատոսութեան տարիները. — այս ամէնը չունին ոչ Լաբուբնա եւ ոչ "Վարդ. Առաք."։ Այժմ կը թողունք այն խնդիրը թէ ինչ պէտք է հասկնալ այն "հաւատարիմ մատեան դիւանաց" գրութիւնը. բայց պէտք ենք մտածել թէ կարելի չէ՞ որ Բարսամեայ բովանդակ այն մասն՝ որ նմանութիւն ունի "Վարդ. Առաք." գրութեան, առնուած ըլլայ այն "հաւատարիմ մատենէն։" Այս դիպաց մէջ՝ որ շատ լաւ կարելի է, պէտք է ըսել որ կամ երկու գրութիւնքս ալ միեւնոյն աղբիւրը գործածած են, եւ կամ գոնէ որ Բարսամեայ Վկայաբանութեան աղբիւրն այն է, որուն հետ այսպէս կամ այնպէս կապ ունի մեր ասորի գրութիւնը։

Երկրորդ ասորի անվաւերականն՝ զոր հոս պէտք չենք զանց առնել յիշելու, է "Վարդապետութիւն Սիմոնի Վիմի" կոչուածն, զոր հրատարակած է Գիւրըթոն[2]։ Այս անվաւերականին վերջերը կը պատմուի թէ երբ Ներոն բռնել տուաւ զՊետրոս, վերջինս կոչեց իւր "Անոսս" (= Լինոս) սարկաւագն, եւ "արար զնա եպիսկոպոս ի տեղի իւր ի Հռովմ։ Եւ զայսոսիկ ասաց ինքն Շմաւոն, եւ դարձեալ զայլ մնացեալսն՝ որ էին իւր, հրամայեաց Անոսի՝ ուսուցանել առաջի ժողովրդեանն, եւ ասէ. Ընդ հին կտակարանս եւ ընդ նորս՝ զայլ ինչ գիրս մի ընթեռնուցուք առաջի ժողովրդեանն՝ որ չէ

[1] Տես Tixeront, p. 92—93. Zur Abgar-Sage, 10, n. 2.
[2] Cureton, anc. syr doc. p. 40.

արժան։ Իսկ իբրեւ հրաման ետ կայսրն ի խաչ հանել զՇմաւոն" եւն։ Այստեղ Շմաւոնի բերանը դրուած իբրեւ վերջին մի միակ խօսքն ուրիշ բան չէ, բայց եթէ բառացի ընդօրինակութիւն մեր ասորւոյն Լ (Ասոր. Ժ) կանոնին, որ է "Կարգեցին առաքեալքն զի մի ընթերցցի յեկեղեցւոջ ի վերայ բեմի այլ գիրք, բայց Հին կտակարանք եւ Մարգարէք, եւ Աւետարան եւ Գործք առաքինութեանց նոցա։"

Աւելորդ չէ այս տեղ յիշատակել որ ճիշդ այս Լ կանոնն ի վկայութիւն կոչած է Փիլաստրիոս[1] որ մեռած է 387ին իբրեւ եպիսկոպոս Բրիքսիայի, եւ որ ուզած է Եպիփանու Հերետութեանց վրայ գրածին նման գործք մը յառաջ բերել լատինական եկեղեցւոյ մէջ իւր "Գիրք Վասն Հերետութեանց" մատենովն, որ սակայն աննշանակ է Եպիփանու գործքին համեմատութեամբ։ Արդ Փիլաստրիոս Հերետութեանց կարգին մէջ իբրեւ ՁԸ կը դնէ Անվաւերականները կարդալը. եւ յիշելով թէ շատ աղանդք աւելի այսպիսի գրութիւններ կը կարդան, կը յաւելու.[2] "Վասն այսորիկ կարգեցին Առաքեալքն եւ յաջորդք նոցա, զի մի այլ ինչ ընթերցցի ի կաթուղիկէ եկեղեցւոջ, բայց Օրէնք եւ Մարգարէք եւ Աւետարանք եւ Գործք Առաքելոց, եւ ԺԴ թուղթք Պաւղոսի, եւ այլ եւս եւթն, Պետրոսի՝ Բ, Յովհաննու՝ Գ, մի՝ Յուդայ եւ մի՝ Յակոբայ, եւ այս եւթանեքին կցեալ են ի Գործս Առաքելոց։" Նմանութիւնը շատ ակներեւ է. բայց առեղծուած կը մնայ մեզ թէ ուր կրնայ Փիլաստրիոս տեսած ըլլալ այս ասորի կանոնը։ — Անցողակի յիշենք որ անկանոնական գրքեր կարդալու արգելքը յաճախ կը յիշեն եկեղեցական մատենագիրք։ Այսպիսի ընթերցումն արգիլեց Ղաւոդիկեի ժողովն.[3] Նաեւ "Սահմ. Առաք." եւ Յունական Առաքելական Կանոնք կը հրամայեն արտաքսել այնպիսին՝ որ այս կարգի գրքեր կը տարածէ[4]։ — Այս միջանկեալէն ետքը դառնանք երրորդ ասորւոյն, եւ այն երկու գրութեանց ի մասնաւորի, զորոնք միայն հայերէն լեզուաւ առձեռնիս ունինք եւ որոնց վրայ կ'արժէ քիչ մ'երկար խօսիլ։

(Շարունակելի։) Հ. Ե. Տ.



## ՀՆԱԽՕՍԱԿԱՆ

### ՄՀԵՐԻ ԴՈՒՌՆ — ՏՈՍՊԵԱՆՑ ԿՐՕՆԸ

Վանայ քաղաքերդին հիւսիսային-արեւելեան կողմը կիսաբոլոր լեռնագօտի մը կայ՝ կրային ուղղորդ ժայռերէ, որուն արեւելեան ծայրը դէպ ի հարաւ միտելով՝ Վարագայ լերանց շղթայն կը

[1] Այս կոչումն ի մէջ կը բերէ Գիւրըթոն (Cur. p. 170), որ զայն առած է Փաբրիկիոսէն (Fabricius, Cod. Apocr. N. Test. p. 749.)
[2] Migne, Patrologiae cursus. Ser. lat. XII, p. 1199. S. Philastrii liber de Haeresibus. LXXXVIII: Apocryphi.)
[3] Կան. ԾԹ եւ Կ. (Hefele, I, 774 եւն։)
[4] Հմմտ. Hef. I 818, 826. Pitra, I 324 եւն։

դիմաւորէ, եւ զոր Ցայնկունները գետակը Վանայ հիւսիսային բուրաստաններէն կը բաժնէ։ Հայկական ժողովրդական վէպն այն լեռնագօտին Տօփրագգալէ կ'անուանէ, որուն Թուրքերը Ջէմջէմ տաղը անուն տուած են։ Լեռնագօտւոյն արեւմտեան ծայրին վրայ կը բարձրանայ Ակրփի քարաստը, որուն համար կը կարծուի թէ յառաջագոյն Վանայ բերդին ժայռերուն հետ միացած ըլլայ եւ երկրաշարժէ կամ հրաբխային արկածէ մը յետոյ բաժնուած, որովհետեւ երկուքին ալ կազմութիւնը կրային է, երկուքն ալ ձեռագործ քարայրեր ու վիմափոր անցքեր ունին, եւ երկուքն ալ սեպաձեւ արձանագրութիւններով ծածկուած են։ Թուրքերն Ակրփի անունն աղաւաղելով՝ Աք քէօփրի (սպիտակ կամուրջ) կ'անուանեն քարաստը՝ իբր թէ գիմացի գետակին վրայ ճերմակ քարերէ շինուած կամրջէն առած այս անունը։ Նոյն լեռնագօտւոյն արեւելեան ծայրին վրայ էր երբեմն հոյակապ եւ մեծագործ Ռուսասկերտը կամ Ռուսասայ դաստակերտը, որ հիմայ Թօփրագ գալէ անունով հողաբլուր մըն է՝ իւր կշտին մէջ ծածկելով նախկին փառաւորութեան աւերակներն ու բազմաթիւ յիշատակարաններ։[1] Իրմէ քիչ մը վար կը բացուի Ջըմջըմ մաղարան կամ քարայրը, որ ստորերկրեայ ուղւով մ'Ակրփիի հետ հաղորդակցութիւն ունի։ Լեռնագօտւոյն մէջտեղը յաղթ ժայռ մը կը ցցուի, որուն երեսն ստորոտէն 20 մեթր վեր տաշուած յղկուած է, որով 5 մեթր բարձր ու 2 մեթր լայն քառակուսի տախտակ մը յարդարուած է՝ բոլորտիքը քանդակուած գեղեցիկ շրջանակով։ Տախտակը շրջանակէն իբր 30 հարիւրամեթր խորագոյն է, վրան սեպաձեւ արձանագրութիւններ քանդակուած են, եւ երկրաշարժէ բռնութեամբ մէջտեղէն վերէն ի վար ճեղքուած ըլլալով՝ կատարեալ դրան կերպարանք առած է։ Ասոր համար ալ ժողովուրդն անոր վրայօք տեսակ տեսակ առասպելներ հնարած է։

Ազգայինք վերոյգրեալ քարէ տախտակը Մհէրէ գափուն կ'անուանեն, զոր Թուրքերը Մէօհէր գափուսու (կնքոյ դուռն) ըրած են։ Եւրոպացի հնագէտք կը կարծեն թէ զրադաշտական Միհր աստուածութենէն այս անունն առած ըլլայ. բայց ըստ մեզ աւելի հաւանական է որ այն անուանակոչութիւնը հայ ժողովուրդը տուած ըլլայ՝ իւր մէջը տարածուած Մհերի զրոյցէն, զոր ողբացեալն Սրուանձտեանց առաջին անգամ ծանօթացուց գրագիտաց։[2] Այն զրոյցին համեմատ՝ ստորերկրեայ ճիւաղաբնակ քաղքի մը դուռն է այն, եւ հոն փակուած է Սասունցի Տիտանեանն Մհեր իւր ձիովը։ Նոյն վէպը կ'ըսէ թէ ամէն տարի Համբարձման գիշերը, ըստ այլոց Ս. Յովհաննու տօնին, այս դուռը կը բացուի։ Իսկ Թուրքերն այն կարծեցեալ դուռը Չօպան գափուսու (Հովուի դուռ) ալ կ'անուանեն, եւ կը պատմեն թէ հովիւ մը նոյն դրան առջեւ քնացած ատեն երազ մը տեսած է, ուր ոգի մ'իրեն երեւնալով՝ խորհրդաւոր դուռը բանալու գաղտնիքն իրեն յայտնած է, որ դրան վրայ փորագրուած մոգական խօսքն ըսելու վրայ կը կայանար։ Հովիւն արթննալուն պէս՝ արտաբերեց այն մոգական խօսքն, եւ իսկոյն դրան երկու փեղկերն իրեն առջեւ բացուեցան։ Ներս մտաւ բախտաւոր հովիւը, եւ աչքերը շլացան երբ տեսաւ այր մը լի ոսկւով, անգամանդներով եւ պէսպէս պատուական քարերով։ Առանց դանդաղելու անձնցմով մախաղը մինչեւ ցբերան լեցուց, եւ մոգական խօսքը կրկնելուն՝ դուռը կրկին բացուեցաւ եւ թողուց որ գանձով բեռնաւորուածն ելլէ երթայ։ Ճամբան հովիւը նշմարեց թէ ցուպն այրին մէջ մոռցած է. շուտով ետ դարձաւ, եւ դուռն իւր մոգական խօսքովն երրորդ անգամ բացուելով՝ մտաւ ներս, ու ցուպը թողուցած տեղը գտաւ։ Բայց երբ դուրս ելլել որ ուզեց՝ չկրցաւ մոգական խօսքը միտքը բերել. դուռը չբացուեցաւ, եւ հովիւն այրին մէջ փակուած մնաց ու կը մնայ։ Անոր հեծութիւնները մինչեւ հիմայ կը լսուին, կ'ըսեն։[1] "Նախորդին" այրին մէջ մտնելը Մհերի վէպն ալ գիտէ, միայն թէ դուռն անոր առջեւ Համբարձման իրիկունն ինք իրմէ բացուեցաւ եւ ոչ մոգական խօսքով, եւ նախորդն հոն Մհերի հետ տեսակցութիւն ընելէն ետեւ անվնաս դուրս ելաւ։

Սակայն այս Մհերի դուռ կամ Չօպան գափուսու ըսուած խորհրդաւոր քարէ տախտակը ոչ ճիւաղաբնակ քաղքի դուռ է եւ ոչ ալ վրան փորագրուածները մոգական խօսքեր են. այլ Բիայնայի կամ Տուպայ Իսպուինիս Ա. թագաւորին եւ անոր Մենուաս որդւոյն մէկ յիշատակարանն է։ Իսպուինիս Ա. Սարդուրիս Ա.ին որդին՝ խաղաղասէր եւ տնաշէն իշխան մըն էր, որ իրեն հոգ ըրած էր երկրին ներքին բարեկարգութիւնն ու շինութիւնը։ Իւր սակաւաթիւ արձանագրութիւններն այսպիսի նիւթերու վրայ են։ Տէրութեան պահպանութեան եւ արտաքին թշնամեաց դէմ պատերազմներու հոգն իւր կորիճ Մենուաս որդւոյն թողած էր, զոր յետոյ իւր գահակիցն ալ ըրաւ, եւ այս նշանաւոր յիշատակարանն երկուքին ալ անունը կը կրէ։ Արձանագրութիւնը 84 տող է, վերինը 31 մանր ու խիտ նշանագիրներով՝ անարատ մնացած. ուր վարի 53 տողերը շատ աւելի մեծ գրով են, եւ՝ ըստ սովորութեան Տուպեան արձանագրութեանց՝ վերնոյն կրկնութիւնն են՝ շատ մը մանր տարբերութիւններով. այս վարինը դժբախտութեամբ շատ վնասուած է։ Շուլց եւ անկէ ետեւ Լէյարտ, որ արձանագրութեան առաջին օրինակողներն եղած են՝ վրան դեղին ջնարակի նշաններ նշմարած են, որով արձանագրութիւնը ծեփուած պիտ'որ ըլլար՝ անշուշտ օդին աւերածէն պահպանուելու համար Առաջին հրատարակող եւ մեկնողն եղած է Մորտման գերմանացին, որուն գրութեան մէկ համառօտութիւնն Ապտուլլահեան Գէորգ էֆէնտին գերմաներէնէ հայերէն թարգմանած ու հրատարակած է։[2] Մորտմաննէն ետքը Սէյսեւուրիշներ կատարելագոյն թարգմանութիւններ ի լոյս ընծայեցին։

[1] Հանդէս Ամս. Է տարի, Թիւ 3, երես 87։
[2] Գրոց ու բրոց, եւ Սասունցի Դաւիթ կամ Մհերի դուռ. հրատր. Գ. Վ. Սրուանձտեանց. Կ. Պոլիս. տպ. Մ. Տնտեսեան, 1874։

[1] H. Hyvernat. Notices sur les inscriptions cunéiformes du bassin de Van.
[2] Հայ. բեւեռաձեւ արձանագրութիւնք լուսաբանեալ ի Մորթմանոյ. Թարգմ. Գէորգ Ա. Ապտուլլահեան. Կ. Պոլիս. տպ. Յակ. Պօյաճեան. 1872։

Արձանագրութեան բովանդակածը կրօնական պաշտամանց կարգաւորութիւն մըն է՝ թէ ինչ մէկ աստուծոյն պիտի զոհուի եւ ինչ միւսին, այնպէս որ Տօսպեանց բովանդակ պանթէոնն իւր աստիճանաւորութեամբն հոս կը հանդիսանայ։ Բայց ասոնց մէջ չեն նշմարուիր ո՛չ Վանատուր Արին Արամազդ, ո՛չ Ոսկեծին Ոսկեմայրն Անահիտ տիկին, ո՛չ Վիշապաքաղ քաջ Վահագն, ո՛չ Միհրական եւ ո՛չ Տիւր դիք։ Տօսպեանք կամ Նախահայք (այսինքն Խալդիք) չէին ճանչնար այս զրադաշտական-արիական աստուածութիւնները, որոնք յետոյ արիական Հայոց հետ երկիրը մուծուած եւ Յունաց դիցաբանութեան քիչ շատ յամարցուած են[1]։ Ասոնց տեղն արձանագրութիւնը կը ներկայացնէ բազմութիւն մը դից, որոնց գլխաւորն էր տէրն Խալդի՝ իբրեւ գերագոյն աստուածութիւն, Հայր ամենայն դից, Ուրարտուի կամ Տօսպեան թագաւորաց պաշտպան։ Ասոր աջակից էին Թէիզբաս՝ օդոյ-դիքն ու Արդինիս՝ արեւ-դիքը, որոնք միատեղ կը կազմէին երեքութիւն մը, որուն պէտք էր վեց գառն զոհել։ Բայց այս երեք աստուածներն առանձին ալ զատ զատ պաշտօն կ'ընդունէին, եւ այն ատեն Խալդեայ 17 եզ եւ 34 ոչխար կը զոհուէր, Թէիզբասայ՝ 6 եզ եւ 24 ոչխար, եւ Արդինիսի՝ 4 եզ եւ 8 ոչխար։ Խալդի կը պաշտուէր նաեւ զանազան ստորոգելիներով՝ իբրեւ մեծազօր, իբրեւ բարերար, իբրեւ Հայր Խալդեանց, աստուած մեռելոց ու պաշտպան այլեւայլ քաղաքաց եւ տեղեաց. եւ ըստ այսմ զատ զատ մեհեաններ ունէր, ուր ընդհանրապէս իրեն մէկ եզ եւ երկու ոչխար կը զոհուէր, միայն իբրեւ աստուած ազգաց՝ 3 եզ եւ 30 ոչխար։ Իսկ ամենայն Խալդեաց մեհենին՝ կերակուր ու վահաններ ալ կը նուիրուէին։ Խալդի՝ ինչպէս նաեւ Թէիզբաս եւ Արդինիս՝ իրենց սեպհական հեծեալքը կամ պաշտօնեայքն ունէին, որոնց պէտք էր 2 եզ եւ 4 ոչխար զոհել։ Խալդեայ գլխաւոր սրբավայրն էր Տօսպ (Դհուսպա) քաղաքը, Թէիզբասայ՝ Երիդիա (Երիզա՞), եւ Արդինիսի՝ Հուիսիս քաղաքը։ Սարգոնի մէկ արձանագրութենէն կ'երեւայ թէ Ուրարտուի թագաւորները պատերազմի գացած ատեն Խալդի դիքն ալ մէկտեղ կը տանէին, որուն գերի իյնալովը Ուրսաս (Ուսաս Բ°) վհատած՝ անձնասպան եղաւ։ Այս երեք գլխաւոր աստուածութիւններէն ետքը կը շարուին իբր [illegible]0 ուրիշ դիք, 53ն իւրաքանչիւր սեպհական անունովը նշանակուած, իսկ միւսերը պարզապէս իբրեւ դիք այս ինչ կամ այն քաղաքի, այս ինչ կամ այն երկրի, եւ ասոնց իրենց աստիճանին համեմատ կը հրամայուի 2 եզ եւ 4 ոչխար, կամ 1 եզ եւ 2 ոչխար զոհել։ Ասոնք հոս մէկիկ մէկիկ նշանակել աւելորդ կը համարինք. միայն կը յիշատակենք թէ այս բազմութեան դից մէջն է նաեւ Սարդիս դիքը, ինչպէս ծանօթ է՝ Սարդք կամ Սարդէս Լիւդացւոց մայրաքաղաքն էր, եւ այն ազգին է նաեւ արեւելեան ուրիշ հին ազգերուն լեզուաւ սարդ կը նշանակէ տարի,[1] որմէ ունինք հայերէն մնացորդ՝ նաւա-սարդ, աա-սարդ, երէթա-սարդ բառերը։ Ուրեմն Սարդիս դիքը Նախահայոց Տարեդիքն էր կամ արիական Հայոց Դիքն Ամանորայ։ Ասոր հաստատուն ապացոյց մըն է Հայոց Նոր տարին սկսիլը Նաւասարդ ամսով, որ կը նշանակէ Նոր տարի։ Արեւելեայց տարեմուտն առհասարակ ամառն ըլլալուն համար է անշուշտ՝ որ այս սարդ բառն Ոսեթերէն կը նշանակէ ամառն, ինչպէս նաեւ Բակտրիացւոց (զանդիկ) համա բառն՝ որ կը նշանակէ ամառն՝ լեզուաբանինք կը կցեն սանսկրիտ սամա եւ հյ. ամ բառերուն հետ, որոնք պարզապէս տարի կը նշանակեն։ — Ի վերջոյ Իսպուինիս արձանագրութեան մէջ կը պատուիրէ՝ ամառնամտին, ձմեռնամտին եւ գարնանամտին Խալդեայ երեք ոչխար եւ ազգաց դից երեք ոչխար զոհել, ուստի կը տեսնուի թէ Նախահայք ալ դրացի ազգաց պէս տարւոյ երեք եղանակ միայն ունէին՝ անշուշտ չորս (եւ ոչ երեք) ամիսը մէկ Եղանակ հաշուելով։

Արձանագրութեան յիշած բազմաթիւ դից մէջ դիցուհի չկայ ամենեւին. աս ըսել է թէ Իսպուինիսէն պաշտօնապէս ընդունուած դիքն ամէնն ալ արական էին։ Այս դրութեան հակառակ՝ Մորտման հին Տօսպեանքն արիական Հայոց Նախահարքն համարելով եւ ասոնց մէջ Խալդի անուամբ գլխաւոր դիք մը չտեսնելով՝ զԽալդի Անահիտ կարդալ ուզած է, եւ այսպէս Տօսպեան դիցաբանութեան շէնքն ըստ քմաց Անահիտ դիցուհւոյն վրայ շինած է։ Ստոյգ է որ Մենուաս իւր յետին յիշատակարաններէն մէկուն մէջ կը յիշէ Շարիս կամ Սարիս դիցուհի մը. բայց ասի յԱսորեստանեայց փոխառեալ Իստար աստուածութիւնն է, որ տառադարձն ի շ փոխուած՝ ինչպէս սովոր կը պատահի։ Ասորեստանեայց դիցաբանութիւնը կ'աւանդէ թէ Իստար (Բնութիւնը) սիրահարած էր Թամմուզի (գեղեցիկ Արեւու), եւ սա Ձմեռէն սպաննուելով՝ սանդարամետքն որ իջաւ՝ հոն բխած կենաց ջրերուն զօրութեամբը նորէն կենդանացաւ։ Լենորման ցուցած է թէ Իստար եւ Շամիրամ մի եւ նոյն անձն է։ Կ'երեւայ թէ Շարիսի կամ Շամիրամայ պաշտաման հետ Ասորեստանէն հայաբնակ երկիրն անցած է նաեւ զրոյցը թէ Շամիրամ Արայ գեղեցկին սիրահարած էր, եւ թէ սոր սպաննուելուն՝ Արալէզներու կամ Առլէզ դից ձեռօք զանի ջանաց նորէն կենդանացընել։ Նոյն զրոյցը կար Փիւնիկեցւոց մէջ ալ Աստարտեայ եւ Ադոնայի վրայ, եւ Յունաց մէջ՝ Ափրոդիտեայ եւ Ադոնիսի վրայ։ Հայոց քով՝ Թամմուզն է Արայն գեղեցիկ, զոր Պղատոն իւր "Հասարակապետութիւն" գրքին մէջ Էր կ'անուանէ՝ Արմենիոսի որդի։ — Սանդարամետք՝ աքքադեան լեզուաւ Արալի երկիր կ'անուանուի, ուր երկնից եւ երկրի ոգւոց ոսկեղէն աթոռոց տակէն կենաց ջրերը կը բխեն։

[1] Այսպէս նմանեցուցած են Արամազդը Ողիմպեան Դիոսի, Անահիտն՝ Արտեմիսի, Նանէն՝ Աթենասայ, Միհր դիքը՝ Հեփեստոսի, Աստղիկն՝ Ափրոդիտեայ, Տիւր դիքն՝ Հերմէսի, Վահագնը՝ Հերակլի եւն։ (Տես Մովս. Խորեն. գիրք Բ. գլ. ԺԴ ուր Յունաց դիքն Հայոց համազօր դից մեհեաններուն մէջ կը տեղաւորուին։)

[1] Հմմտ. սանսկր. սարադ եւ պհլ. սարէտա, տարի։ Բառերուն ըստ իւրաքանչիւր ազգաց առած փոփոխմանցը զարմանալի երեւոյթներէն է՝ հին րդ եւ րթ զուգատառին Պարսից քով ի լ դարձած ըլլալը։ Այսպէս է سال, دل, كل, پلنك, پاليز, սալ (տարի), դիլ (սիրտ), կիլ (վարդ). փելենկ (pardang, հյ. վագր.) փալէզ (պարտէզ) բառերուն մէջ, որոնց վերջինն այժմու նորագոյն հնչմամբ եղած է փալիզ, յորմէ փալիզպան (պարտիզպան)։

Արալի էր դարձեալ բարձր լեռ մը որուն գագաթան վրայ Երկինքը կը հանգչէր, ինչպէս նոյնը յունական զրոյցք ալ կ'աւանդեն հիւսիսային լերանց համար։ Այս հիւսիսային լեռն՝ այսինքն ասուերաց երկիրը՝ նոյնացած կ'երեւայ Արարատայ լերանց հետ, ուր նաեւ զետեղուած է Արայի դէպքը։ Հայոց Արալէզքն այս Արալիի դիքը պիտ'որ ըլլան, կ'ըսէ Սէյս։[1] Երասխայ հովտին եւ Փոքր Կովկասու նախապատմական գերեզմաններուն եղած հնագիտական խուզարկութիւններն Խատարեայ կամ Շարիսի պաշտաման հետք մը չգտան, ուր Մեծ Կովկասու եւ գլխաւորաբար Կոբանի գերեզմաններէն նոյն պաշտաման բազմաթիւ նշաններ ելան։ Ասկէ կը հետեւի թէ այն գերեզմաններուն ժամանակը՝ Նախահայոց մէջ Շարիսի պաշտօնը դեռ մուտ չէր գտած, եւ թէ Կոբանի գերեզմանները յետնագոյն ժամանակաց են։[2] — Վերյիշեալ Սարգոնեան արձանագրութիւնն Ուրարտուի գերի տարուած Խաղդեայ հետ Բագբարտու կամ Բագմաշտու դիք մ'ալ կը յիշատակէ։ Անուանս վերջին ընթերցումն արիական նկարագիր ունի, եւ առաջին նշանը կ'ըլլայ արիական ազդեցութեան այս կողմանց վրայ։[3]

Տոսպեան կամ Ուրարտուի մեհեաններն Ասորեստանեայց մեհեաններուն հետ շատ նմանութիւն ունէին, ինչպէս Խորսապատ գտնուած խորաքանդակ մը Խաղդեայ մեհեանը մեզի կը ներկայացնէ։ Ասիկա չորեքկուսի յատակի վրայ կը բարձրանայ, եւ ծածկը բրգաձեւ նաճւոյ նման մասով մ'աւարտած է։ Ճակատը զարդարուած է չորս չորեքկուսի սիւներով, որոնց մէջտեղը դուռ մը կը բացուի վրան պզտիկ քիւով մը։ Սիւներէն կախուած են կլոր ուռուցիկ վահաններ՝ վրան առիւծներ եւայլն քանդակուած, բոլորովին նման անոնց որոնք Թոփրագ գալէի պեղումնքէն ելած են։ Դրան երկու կողմը կայմեր կանգնուած են, որոնք բրգաձեւ նաճիներու նման կը վերջաւորին։ Մտից առջեւը՝ ձախ կողմը՝ կով մ'իւր որթը կը դիեցնէ, եւ դիմացը՝ ցլոտն եռոտանիներու վրայ երկու մեծամեծ բոլորաձեւ աւազաններ կը տեսնուին, մէյ մէկ ճշմարիտ "ծով պղնձի," որոնց մէջն է քաւութեան ջուրը։ Քանդակը կը ներկայացնէ ասորեստանցի զինուորներն որոնք մեհեանը կը կողոպտեն, եւ առած կը տանին միատանի բագիններ, եռոտանիներ եւ վահաններ՝ վերը նկարագրուածներուն նման։ — Խաղդեայ դից Սարգոնի ձեռքը գերի իյնալէն յայտնի կ'ըլլայ թէ Տոսպեանց դիքը դրօշեալք էին՝ ի սկզբան փայտեայ եւ յետոյ քարէ եւ մետաղեայ։ Բայց մինչեւ ցայժմ Այրարատեան երկիրներու մէջ եղած հնախուզական պեղումները կը ցուցընեն թէ Նախահայք՝ իրենց ազգակից դրացիներու սովորութեանն հակառակ՝ մարդկային դէմք չէին դրօշեր, այլ մարդկային մարմնոյ վրայ անասնոյ եւ գլխաւորաբար շան ու կատուի գլուխ կը դնէին։ Այս երեւոյթը կրօնական սկզբամբ եղած կը համարուի եւ հաւանական է որ Տոսպեանք իրենց դիքն ալ նոյնպիսի կերպարանքներով երեւցուցած ըլլան, ինչպէս ըրած են Եգիպտացիք եւ Ասորեստանեայք։

Մհերի դուռը՝ դիցաբանական կարեւորութենէն զատ՝ ունի նաեւ աշխարհագրական եւ լեզուաբանական կարեւորութիւն, որովհետեւ Զումար, Արդինիս, Քումենուս, Արծունինի, Ծունինի, Ապքանաս, Նիսիադուրուս, Երիդիաս, Հուխիս եւ այլն քաղաքներուն եւ Եբանինա, Ալզանիս ու Բաբաս երկիրներուն աստուածները կը յիշէ։ Նաեւ յառաջ բերած բազմաթիւ դից անունները թէ նշանակութիւն մը պիտ'որ ունենան, ինչպէս որ Սարդիս՝ տարեդիք, Սելարդիս՝ լուսին դիք, Աուիս՝ ջրոյ դիք, Այաս՝ երկրի դիք կը կարծուին, եւ թէ նոյն անուններով քաղաքներ ու տեղեր պիտ'որ ըլլան, ինչպէս կը համարուին թէ են՝ Դիդուայինիս՝ Դատուան, Քուերաս՝ Կէվէռ, Երինաս՝ Էրենին, Խարաս՝ Խառան, Զիուքունիս՝ Զախու լեառն, Էլիփրիս՝ Իլու, Հուրաս՝ Ուռհա եւայլն։ — Ուլաս եւ Անիս դից նոյնանուն քաղաքները կան դեռ։ Ուստի ասոնք քաջ ուսումնասիրելով ու հետազօտելով եւ քաղաքներուն հետքերը որոնելով Վանայ եւ Երասխայ հովիտներուն մէջ՝ թէ լեզուն կը շահի, թէ դիցաբանութիւնը կը լուսաւորուի եւ թէ Տոսպեանց իշխանութեան սահմանները կը ճշդուին, այնու որ նշանակուած դիքն ու քաղաքներն իրենց երկրին աստուածներն ու քաղաքներն են։

Վերջացընենք՝ Իվեռնայի մէկ դիտողութիւնն ալ առաջ բերելով, որ պատմական կարեւորութիւն ունի։ Իսպուինիս եւ Մենուաս այս իրենց արձանագրութիւնը՝ Դուռն կ'անուանեն ճիշդ այնպէս՝ ինչպէս հիմակուան ժողովուրդն ալ անոր Դուռ անունն կու տայ։ Եւ որովհետեւ արձանագրութեան մէջ ուրիշ դռներ ալ կը յիշատակուին, ինչպէս Խաղդեայ դուռն, Նիսիադուրուսի դուռն, Հուայիսի դուռն, Երիդեայ դուռն, Թէիզբասայ դուռն, կը հետեւի թէ Մհերի դուռն ամենէն հնագոյնը չէր, այլ կային ուրիշներ ալ անկէ յառաջ, զորս հնար է երեւան հանել՝ եթէ Վանայ եւ Վարագայ կողմերը խուզարկութիւններ ըլլան, կ'ըսէ գիտնականը.[1] եւ մենք կը յաւելունք՝ — եթէ այն դռները փայտեայ եղած չըլլային, ինչպէս հաւանական է։

Հ. Ն. Ա.



[1] H. A. Sayce, Inscript. of Van.
[2] Morgan, Etudes archéologiques et historiques. p. 67.
[3] Sayce, անդ։

[1] H. Hyvernat, Notices sur l'Histoire ancienne de l'Arm. d'après les inscriptions arméniaques. — Ispuinis.